1917 № 35—ՀՈԿՏԵՄԲ.-Ի 29 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասարքաղեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից. Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում.

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՄԻԱԿ ԵԼՔԸ

Համաշխարհային պատերազմը առասպելական չափեր է ստացել. Նրա կործանիչ հետեւանքները ստեղծել են խեղդող մթնոլորտ համայն մարդկութեան համար, կեանքը ամենուրեք ճնշուած է։

Իւրաքանչիւր օրը պատերազմը խլում է բազմաթիւ կեանքեր, մեռցնում է կուլտուրան, թունաւորում է անհատական, հասարակական և քաղաքական կեանքը, առաջ է բերում տնտեսական սարսափելի քայքայում։

Բոլոր պատերազմող պետութիւնները, առանց բացառութեան, ծանր կացութեան մէջ են, սակայն Ռուսաստանի դրութիւնը բացառիկ ծանր է։

Ոչ մէկ պետութեան չվիճակուեց տալ այնքան զոհեր մարդկային և նիւթական, որքան Ռուսաստանին։

Թշնամին պատերազմի հենց սկզբից՝ իր գլխաւոր յարձակումները ուղղել է Ռուսաստանի դէմ և այդ յարձակումները կատարուել են կատաղի կերպով, մեծ թափով։

Պատերազմի ծանրութիւնը Ռուսաստանն է տարել իր ուսերի վրայ։ Իսկ դաշնակիցները չկարողացան դժբաղդաբար իրենց ակտիւ գործողութիւններով այնպիսի հարուածներ տալ թշնամուն, որ նա էլ ստիպուած լինի իր ուժերի զգալի մասը փոխադրել Ռուսաստանի սահմանից միւս ճակատը, որպէս զի Ռուսաստանի դրութիւնն էլ որոշ չափով թեթեւանայ։

Ռուսաստանի ծանր դրութիւնը լուսաբանելու համար՝ բաւական է նոյնիսկ թռուցիկ տեսութիւն անել նրա իրականութեան մասին։

Կռիւը յաջող մղելու համար՝ նախ հարկաւոր են հաստատուն ֆինանսական միջոցներ. իսկ Ռուսաստանի ֆինանսները ողբալի դրութեան մէջ են. ռուսաց դրամի կուրսը այն աստիճանի ընկել է, որ մինչև անգամ Պարսկաստանում մէկ ռուբլին հաւասարուել է 4—6 կոպէկի. դրամի կուրսի իջնելը քայքայում է մտցրել և մեր երկրի ներսը։ Պատերազմական ծախսերի գումարը այժմ հասել է եօթանասուն և հինգ միլիոն ռուբլու օրեկան. կառավարութիւնը ստիպուած անթիւ թղթադրամ է դու

թողնում և աւելի ու աւելի գցում դրամի արժողութիւնը։ Մի կողմից պետութեան ծախսերը հասել են սարսափելի չափերի, իսկ միւս կողմից պետութեան մուտքերն նւազել են շատ մեծ չափով։ Ահա թէ ինչ ողբերգական դրութիւն է ստեղծւել պետութեան համար ֆինանսների տեսակէտից։

Ոչ պակաս նշանակութիւն ունի և պարէնաւորման խնդիրը։

Պարէնաւորման գործը օրհասական վիճակի է հասել. հացաբեր Ռուսաստանը ներկայումս սովի ճիրանների մէջ է. երկրի ահագին շրջանները, որոնք մեծ քանակութեամբ հաց էին արտահանում, այս տարի մասամբ երաշտից, մասամբ առատ անձրևներից, բերք չունեցան և այժմ մատնւած են քաղցածութեան, որը առիթ է տալիս ժողովրդական խռովութիւնների զանազան տեղերում, իսկ ապագայում սպառնում է աւելի մեծ վտանգներ։

Պետական կեանքի կարևոր ջիղերից մէկը հաշւում է կանոնաւոր հաղորդակցութիւնը. այդ կողմից ևս Ռուսաստանի դրութիւնը շատ աննախանձելի է. երկաթուղագծերի վրայ տիրում է կատարեալ անիշխանութիւն. զգացւում է մեծ կարիք շոգեմեքենաների, վագոնների, որոնց ստացումն արտասահմանից դժւարացել է, իսկ Ռուսաստանում չկան բաւականաչափ գործարաններ։ Դրութիւնն այնքան լուրջ է համարւում, որ արդէն կարգադրւած է նոյեմբերից կրճատել մարդատար գնացքների թիւը։

Պատերազմը յաջող մղելու համար անհրաժեշտ է ունենալ կանոնաւոր զօրք։ Ռուսաստանի զօրքը միշտ գովելի է եղել թէ իր քաջութեամբ և թէ իր կարգապահութեամբ, սակայն այժմ այդ կողմից ևս Ռուսաստանին վիճակւեց անյաջողութիւն։

Բոլշևիկների անիմաստ և վնասակար ագիտացիան մտցրեց զօրքերի մէջ կարգապահութեան քայքայումն. զինւորները զգացին իրենց անպատասխանատու հրամանատարների առաջ. Նրանց մի մասը ներշնչւեց այն մտքով, որ այս պատերազմը մի աննպատակ ավանտիւրայ է. սկսեցին բացարձակապէս հրաժարւել կռւելուց և անամօթաբար ամբողջ գնդերով, երբեմն ամբողջ դիվիզիայով, առանց մի գնդակ արձակելու, անձնատուր էին լինում թշնամուն։ Երբէք պատմութիւնը չէ մոռանալու այն խայտառակութիւնը, որ Ռիգան,—որի պաշտպանութեան համար երկու տարւայ ընթացքում մեծ զոհեր են եղել—վերջին անգամ յանձնւեց թշնամուն համարեա առանց կռւի. մեր զօրքի կողմից եղան միայն մէկ սպանւած և երեք վիրաւորւած...։

Ահա թէ ինչ տաժանելի հանգամանքներ են ստեղծւել պատերազմի ժամանակ։

Պատերազմի յաջողութիւնը պահանջում է, որ զօրքի թիկունքը լինի ամուր, հաստատուն և երկրի ներսը խաղաղութիւն։

Իսկ ինչ է ցոյց տալիս մեր դառն իրականութիւնը. թիկունքի զօրքերի մեծ մասի մէջ նկատւում է լքում, կարգապահութեան բացակայութիւն. երկրի ներսը, ժողովուրդի մէջ էլ կատարեալ անիշխանութիւն է, խանգարւած է ամեն մի կարգ, չը կայ ոչ անձի և ոչ էլ կայքի ապահովութիւն։ Իշխանութեան բացակայութիւնը արտայայտւում է շատ զգալի ձևով. Ռուսաստանի շատ նահանգներում սկսւել են խռովութիւններ, աւերումներ. կողոպտւում են քաղաքներ, գիւղեր, սպանւում են մարդկանց. հրի ու ոչնչացման են ենթարկւում կալւածքներ, գործարաններ, և այս ցաւալի արշաւանքները աւելի և աւելի մեծ ծաւալ են ստանում։ Չկայ ոչ մի իշխանութիւն, չկայ ոչ մի ուժ, որը կարողանար խռովարարներին սանձահարել, առաջն առնել այս աւերումներին։

Արդեօք այս բոլորը չի՞ ցոյց տալիս, որ պատերազմը շարունակելը արդէն անհնարին է դարձել։

Յոգնել ու ձանձրացել է ժողովուրդը պատերազմից, յոգնել են և իրենց կոչման հաւատարիմ մնացած զօրքերը խրամատների երկարատև և տաժանելի կեանքից։ Ամենքի ջերմ ցանկութիւնն է՝ պատերազմից վերադառնալ խաղաղ կեանքի ու դիմել կուլտուրական և ստեղծագործական աշխատանքի։

Պատերազմին վերջ տալը, խաղաղութիւն կնքելը բոլորի համար դարձել է շատ զգալի պահանջ։

Իսկ բոլշևիկների նոր փորձը իշխանութիւնը բռնի միջոցով իրենց ձեռքը գցելու, որը կարող է դառնալ նոր արիւնահեղութեան առիթ, այլևս չի թողնում ոչ մի կասկածանք, որ պատերազմը պէտք է վերջացնել, պատերազմի շարունակելը այլևս անկարելի է դարձել։

Վայրկեանը վերին աստիճանի լուրջ է. հասել է ժամը, երբ այլևս չկայ ոչ մի ելք փրկելու Ռուսաստանը իսպառ կործանումից, բացի խաղաղութիւն կնքելուց։

Անկասկած՝ խաղաղութիւնը կը կնքւի ծանր պայմաններով, բայց հանգամանքները պահանջում են երկու չարիքից ընտրել նւազագոյնը, փոքրը, կործանման փոխարէն՝ հաշտութիւն, որը ի հարկէ չէ կարող Ռուսաստանի ինքնասիրութեան բաւականութիւն տալ։

Հայրենասիրական զգացմունքը, քաղաքական հեռատեսութիւնը պէտք է թելադրեն մի բան միայն՝ այլևս չմտածել պատերազմի շարունակութեան մասին, չսպասել պատերազմից բարիքներ Ռուսաստանի համար և աշխատել շուտափոյթ հաշտութիւն կայացնել, պաշտպանելով Ռուսաստանի շահերը որքան որ հնարաւոր կը լինի, որքան որ ապահոված կը լինի Ռուսաստանի վերածնութիւնը և հզօրութիւնը ապագայում։ Չպէտք է մոռացւի և փոքր ազգերի ազատութիւնը, որը եղել է այս պատերազմի բարձր գաղափարներից մէկը։

Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

## ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

«Համբաւաբեր»-ի խմբագրութիւնը յայտարարում է ի գիտութիւն թերթի բաժանորդների և ընթերցողների, որ տպարանի ու գրաշարների աննկարագրելի թանգութեան պատճառով, 35-րդ համարից սկսեալ թերթը լոյս չտեսաւ։

Խմբագրութիւնը իր թափած բազմաթիւ ջանքերի շնորհիւ յոյս ունի, որ այսուհետև պիտի կարողանայ պարբերաբար լոյս ընծայել թերթը և այդպիսով բաւարարութիւն տալ մեր յարգելի ընթերցողների բուռն ցանկութիւններին։

## ԱՆՑՔԵՐԸ ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ

Պետրոգրադից ստացուած տեղեկութիւնների համաձայն, բոլշևիկները յեղափոխութիւն են կազմակերպել կառավարութեան դէմ։ Բոլշևիկները գրաւել են մայրաքաղաքի զանազան կարևոր կէտերը։ Նրանց պարագլուխ Տրոցկին յայտարարում է, որ թերևս ցոյցը անարիւն անցնի. ձերբակալուած են մինիստր Քարտաշևը և Ժամ. Կառավարութեան գործավար Գալպերինը։ Կենտր. կառավարութիւնը ոյժ չունի բոլշևիկների ճնշման դիմադրելու։ Կերենսկին կայանումն է. ճակատի զօրամասերը Ժամ. Կառավարութեան կողմն են։ Արևմտեան և կովկասեան ֆրոնտի բոլոր զօրամասերը յայտնում են իրենց հաւատարմութիւնը Ժամ. Կառավարութեան։ Ֆրոնտից զօրք է գնում Պետրոգրադ կառավարութեանն օգնելու։

Թիֆլիսի միացեալ կենտրոնը 26 ձայնով, 27-ի ձեռնպահութեամբ, որոշեց արիւնահեղութիւն առաջ չբերելու համար՝ խաղաղութեամբ վերջ տալ ապստամբութեան։ Յեղափոխական դեմոկրատիայի համերաշխ գործակցութեամբ կազմել իշխանութիւնը։ Ժամ. Կառավարութիւնը Պետրոգրադի ցոյցերի առթիւ կոչ է բաց թողել, որով հրաւիրում է զօրքերին ու ազգաբնակութեան հանդարտ և հաւատարիմ մնալու կառավարութեան։

## ՊԱՆԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐԸ ՌՈՒՍԻԱՅ ԴԷՄ

—o—

Պանգերմանիզմը ձեռնարկել է Ռուսաստանի դէմ իր ամենասոսկալի յարձակումը, որի նախագիծը երկար ժամանակից ի վեր պատրաստուած էր և որի իրականացման համար՝ ռուսական յեղափոխութիւնը նպաստաւոր թուեց գերմանացիներին։ Գերմանիան պարզապէս աշխատում է կղզիացնելու Ռուսիան Եւրոպայից, այնպէս որ գոյութիւն ունենայ միայն աշխարհագրականապէս և քաղաքականապէս Ասիական Ռուսիա։ Ժողովուրդների ինքնավարութեան և իրաւունքի պատրուակով, պանգերմանիզմը աջից ու ձախից ձգտում է չորս հովին տալ ռուսական երկիրը և Ռուսիան ջնջել եւրոպական ազգերի ցուցակից։

Բոլոր սահմանագլխային գաւառները, որ թէ ծովով և թէ ցամաքով Ռուսաստանը կապակցում են Եւրոպային, յետ են պահանջուած որպէս «գերմանական հողեր» և կամ ճակատագրուած են ազատագրման, այսինքն Ռուսաստանից կտրուած և ձևափոխուած են մանր նահանգների, գերմանական ազդեցութեան ներքոյ։ Ռուսիան պիտի կտրուի ծովից և աշխարհից Ֆիլլանդիայով։ Ազգայնականութեան սկզբունքի անունով պանգերմանիզմը բացէ իրաց Բալտիկեան գաւառները միացնում է Գերմանիոյ։

Յայտնի է արդէն թէ ինչպէս գերմանացիները իրենց ծրագրի վրայ սողացնում են ռուսական Բոլոնիոյ «անկախութիւնը» գերմանացի կամ աւստրիացի մի բռնապետի իշխանութեան տակ, բացարձակապէս յետ մղելով Վեստուլի և Պոզնանի հետ Պոլոնիական միութեան վերահաստատման գաղափարը։

Ապա գալիս է Փոքր Ռուսիան (Ուկրայինան), որի անջատողական ձեռնարկը ձգտում է բացորոշ կերպով ռուսական միութեան խանգարման։

—

Գործունէութեան այս նախագիծը կարող է համարուել ազատական, ինքնավարական և յեղափոխական։ Բայց իրականութեան մէջ պանգերմանական նախագիծ է, իր սկզբնաւորութեամբ և իր վերջաւորութիւններով։ 1867-ին Կարլ Մարքս և Բըրկհայմ ռուս ժողովուրդը բնաջնջելու մի խաչակրութիւն էին դրուատում ռուսները Ուրալից այն կողմը նետելու համար։ 1884 ին, Պոլ Բոթիգէր գրում էր «Պէտք է ստեղծել եւրոպական մի կեդրոն... որ հեռացնի ռուսներին Սեւ ծովից եւ Գերմանիոյ արեւելեան սահմաններում գերմանական գաղութներ հաստատի»

Պանգերմանիզմի գլխաւոր լիդերներից մին, Պոլ Րորբախը, իր պատերազմական յօդուածներում, Մոսկուայի և Ուկրայնիոյ միջև նախկին սահմանագծի վերահաստատումն է պահանջում։ Գեներալ Ժիպսատէլը դեռ աւելի առաջ կերթայ. նա պահանջում է դէպի արևելք ծռել ռուսական դժնդակ ծոծրակը։ Նշանակում է վերաքննել պատմութիւնը, փոխադրել երկու հարիւր տարի առաջ, ռուսական կմախքը նետել Մեծն Պետրոսից առաջ ունեցած սահմաններից միւս կողմը։

Ռուս յեղափոխականները հարիւր տարից ի վեր աշխատում են ռուս ժողովուրդը հասցնել արևմտեան Եւրոպայի վիճակին։ Պանգերմանիզմը ձգտում է Ռուսաստան ձգել արևելեան բարբարոսութեան մէջ. այդ բանին յաջողելու համար նա օգտըւում է յեղափոխութեան սկզբունքներից։

Ուկրայինան նուազ նախապատրաստուած էր թուում գերմանական էնթրիգին, Ուկրայնացիները երբէք նուաճուած չեն ռուսների կողմից. նրանք Ռուսաստանին կամաւորապէս միացան 1654 թուին հաւատարիմ երդումով։ 1913-ի օգոստոսին և 1915ի փետրուարին ռուսական ուկրայնացիները յայտարարում էին իրենց հաւատարմութիւնը ռուսական հայրենիքին։ Նոյնիսկ Աւստրիական Գալիցիայում ռուսասիրական զգացումը շատ ուժեղ էր։

Առանց դժուարութեան հանդիպելու Վիէննայում «Ուկրայինայի ազատագրման նուիրուած մի ընկերութիւն» հիմնուեց, որ գերմանական քարտէզները հրատարակեց, որոնց մէջ Ուկրայինան տարածուած էր Սև-Ազով ծովերից մինչև Կովկաս։ Ուկրայնիոյ հայրենասէրներից Ժորժ Գլէյնոֆը, բազմաթիւ բրոշիւրներ գրեց այդ պրոպագանդային նուիրուած։ Գերմանական բազմաթիւ թերթերում այդ ուղղութեամբ յօդուածներ երևացին։

1915 թուի ապրիլին «Ուկրայնիոյ գլխաւոր խորհրդի» նախագահը՝ արխիդուքս Ֆրէդերիքի և Կարլ Ֆրանս Ժոզէֆի կողմից ընդունուեց և շնորհաւորուեց։

1915-ի յուլիսին «Ուկրայնիոյ ազատագրման նպաստող ընկերութիւնը» յայտարարում էր, որ «Արևմտեան Եւրոպայի և

Ռուսաստանի միջև պիտի լինի Ուկրայնական անկախ մի պետութիւն,»

Սա Աւստրո-Ունգարիոյ և ամենից աւելի Գերմանիոյ շահն է։

Նախագիծը որոշ է և թագցնելու պէտք չկայ։ Պանգերմանիզմը աշխատում է ռուսական մարմինը կրծել թերթ առ թերթ։

(«Le Matin»)

## ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Երկու կարծիք չի կարող լինել, որ ներկայ ճգնաժամին գաղթականութիւնն անհամեմատ դժուար կացութեան մէջ է ապրում, քան տեղացի ազգաբնակութիւնը։

Սովի ուրուականը նրա համար այնքան սարսափելի է դառել, որ տեղեկութիւններ են ստացուել քաղցից առաջացած մահուան դէպքերի և հիւանդութիւնների մասին, որոնք վաղը կարող են լայն ծաւալ ստանալ և վտանգել ամբողջ համայնքը։

Կ. Հ. Բ. Ընկերութիւնը իւր վրայ վերցնելով գաղթականների պարենաւորման գործը, կասկածել չէր կարող, որ նրան յատկացրած ամսական 187 վագոն ալիւրի քանակը վտանգաւոր մինիմումի կը հասնի։ Այն ինչ, պիտի յիշել, վերջին 4 ամսում մահմեդական գաղթականների թիւը աւելացել է 40,000, իսկ որբերինը 6000։

Յիշեալ նորմայի հաշւին՝ յուլիս, օգոստոս ամիսներում ստացուած է 21 վագոն, իսկ սեպտեմբեր և հոկտեմբեր ամսում և ոչ մի վագոն։

Յայտնի է, որ գաղթականների պարենաւորման գործը բաժանուած լինելով տեղացի ազգաբնակչութեան պարենաւորման գործից, առաջիններին միանգամայն զրկում է որևէ հնարաւորութիւնից Ընկերութեան պահեստներից դուրս օգտուել մթերքներով կօօպերատիւներից կամ ուրիշ հիմնարկութիւններից։

Պարզ է այսպիսով, թէ որպիսի սարսափելի զրկանքի է ենթարկուած մեր գաղթականութիւնը, որ բառիս բուն նշանակութեամբ զուրկ է ամեն տնտեսական միջոցներից։

Յուլիս ամսում նախատեսելով գալիք ճգնաժամը, շրջաբերական կարգադրութիւն արեց պահեստապետներին՝ գաղթականներից ընտրուած լիազօրների հետ խորհրդակցել տեղում մթերքների գնումներ կատարելու մասին, բայց այդ փորձը ոչ մի յաջողութիւն չունեցաւ, քանի որ շուկայում որևէ մթերք գտնելը անհնարին է դարձել։

Աչքաթող չի արուած և հացի ճգնաժամը մեղմացնել գետնախնձորի գործածութեամբ։ Վերին աստիճանի դժուարութեամբ Ընկերութեանս յաջողուեց Ախալցխայի գաւառում գնել 10 վագոն գետնախնձոր, որից 4 վագոն ստացուել և ուղարկուել է պահեստներին, իսկ մնացած 6 վագոնը շուտով կստացուի և կուղարկուի աւելի կարօտեալ վայրերը։ Յիշեալ քանակից աւելին գնելու փորձերը անյաջողութեան հանդիպեցին։

Ընկերութեան միւս բոլոր փորձերը Երևանի, Գանձակի և Թիֆլիսի սահմաններում մթերքների գնումներ կատարել դարձեալ ոչ մի յաջողութիւն չունեցան։

Ալիւրի պաշարի վերջանալուն հետ վերջացել են միանգամայն և միւս մթերքների պաշարները և այժմ Ընկերութեան բացած գաղթականների համար 32 պահեստները, առանց բացառութեան, բառիս բուն նշանակութեամբ դատարկ են մնացել։

Պահեստապետներից ամեն օր ստացուած հեռագիրները միևնոյնն են պնդում, որ սոված գաղթականները շրջապատում են պահեստները և սպառնում են պահեստապետներին։

Դրութեան այս աստիճան կրիտիքական լինելը լուրջ քննութեան ենթարկուեց պարենաւորման յանձնաժողովի ժողովում, սեպտեմբերի 11-ին Ս. Յարութիւնեանի նախագահութեամբ։ Ժողովում որոշում կայացուեց դիմել գաղթականների բարձր խորհրդին և Կովկասի պարենաւորման գործի գլխաւոր լիազօրին, որ գոնէ 187 վագոն ալիւր նորմայի փոխարէն Ընկերութեան տրուի ամսական առնուազն 95 վագոն, հակառակ դէպքում Ընկերութիւնը իրեն ազատ կը համարի պատասխանատուութիւնից էքսցեսների դէպքում։

(Շարունակելի)

Վ. Բաղդասարեան

## ԱԶԳ. ՀԱՄԱԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՐԴԻՒՆՔԸ

Թիֆլիսում գումարուած Ազգ. Համախորհրդակցութիւնը վերջացաւ և նպաստաւոր հետևանք ունեցաւ։

Հայ ժողովրդի ապրած ներկայ բացառիկ ծանր վայրկեանները, նրա կրած զրկանքներն ու դժնդակ հարուածները, մեր ներքին ազգային քայքայուած կեանքը և ժամանակակից Ռուսաստանի հետ կապ ունեցող հրատապ խնդիրները խոշոր պահանջ էին դարձել ազգային միութեան և համերաշխութեան։

Բոլոր հայ կուսակցութիւնների, հաստատութիւնների և հասարակական կազմակերպութիւնների ներկայացուցիչները, թուով մօտաւորապէս 180 հոգի, ըմբռնեցին ժողովրդի տագնապալից վիճակը և իրենց պարտականութեան խոր գիտակցութեամբ կարողացան շատ սուր վէճերից ու քննադատութիւններից յետոյ համերաշխել և հիմք դնել Ազգային ժամանակաւոր Գերագոյն Խորհրդի։

Համախորհրդակցութեան մէջ վճռուեցին մի շարք կենսական խնդիրներ, որպիսին են՝ վերաբերմունքը դէպի ներկայ քաղաքական մոմենտը, կովկասեան զեմստւօ, պարենաւորման հարցը, ինքնապաշտպանութեան խնդիր, գաղթականական խնդիրներ, դպրոցների ազգայնացում, նախկին Ազգային Բիւրոյի հաշուետուութիւն ևայլն։

Ի վերջոյ խորհրդակցութեանը մասնակցող բոլոր ֆրակցիաների համաձայնութեամբ կազմուեց ազգային խորհուրդ հետևեալ անձերից. Հ. Ժ. Կուսակցութիւնից՝ Ս. Յարութիւնեան և բժ. Այվազեան, Դաշնակցութիւնից՝ Ա. Ահարոնեան, Ս. Գիւլխանդանեան, Ռ. Տէր-Մինասեան, Խ. Կարճիկեան, Ն. Աղբալեան, Սոց.-Դեմոկրատներից՝ Ա. Երզնկեան և Ղ. Տէր-Ղազարեան, Էսէրներից՝ Լ. Աթաբէգեան, Յ. Տէր-Օհանեան։

Խորհրդի առաջին նիստում նախագահ ընտրուեց Ա. Ահարոնեան։ Բացի Ազգային Խորհրդից, ընտրուելու է և Ազգային Ժողով՝ 35 անդամից բաղկացած։

## ՄԻ ԳԵՂԵՑԻԿ ՁԵՌՆԱՐԿՈՒԹԻՒՆ

Ներկայ պայմաններում ամենակենսական խնդիրներից մէկն է երկրի պարենաւորման հարցը։

Ամբողջ Կովկասը այս րոպէիս կանգնել է սովի նախօրեակին և յուսահատ ջանքեր է անում այդ մղձաւանջի առաջն առնելու։

Արտաքին զօրաւոր թշնամիներից, ներքին սոսկալի աղէտներից երկիրը պաշտպանելու մէկ կարևոր պայմանը ազգաբնակչութեան պարենաւորումը ապահովելն է։

Այդ տեսակէտից խիստ ցավելի ձեռնարկ է Կ. Հ. Բ. Ընկերութեան կից բացուելիք սպառողական խանութը։

Այդ գավելի ձեռնարկը պէտք է ընդհանրանայ և տարածուի նաև գաւառներում, ուր մթերքների ճգնաժամը աւելի սուր կերպով է զգացւում։ Ընկերութեան գաւառական ճիւղերը օրինակ առնելով կենտրոնից՝ իրենք ևս պէտք է իրենց շրջաններում բանան սպառողական խանութներ, կօոպերատիւ հիմքերի վրայ և գէթ որոշ չափով փրկեն ժողովուրդը մօտալուտ սովի աճարկ ւ ճիրաններից։

Հոկտ. 15-ին Կ. Հ. Բ. Ընկ. դահլիճում կայացաւ կօոպերատիւ ընկերութեան առաջին նիստը։ Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեան բաց անելով ողջոյնի խօսքերով ընդհանուր ժողովին բացատրեց պարենաւորման ներկայ տագնապալից վիճակը, որը զգալի է ամեն տեղ հաւասարապէս. այդ իսկ տեսակէտից Բարեգ. Ընկ. Խորհուրդը ընդառաջ գնալով ժամանակի պահանջին ձեռնարկել է բաց անելու սպառողական մի ընկերութիւն կից Բարեգործ. Ընկերութեան, դնելով այդ նորածիլ ընկերութեան տրամադրութեան տակ 25,000 ռ., որը և ընդունուեց ժողովականների կողմից մեծ գոհունակութեամբ։ Ապա հրաւիրելով ժողովականներին գործի, առաջարկեց ընտրել ընդհանուր ժողովի նախագահ և անցնել գործի։

Ժողովի համար միաձայն նախագահ ընտրուեց պ. Իս. Յարութիւնեան։ Ապա ժողովը ի նկատի առնելով կօոպերատիւային ընդհանուր * ծրագիր-կանոնադրութիւնը, որոշեց յանձնարարել նոր ընտրուելիք վարչութեան՝ մշակել ու կազմել կանոնադրութիւնը և տալ ի հաստատութիւն։

Ընտրուեց հիմնադիր մի վարչութիւն 7 հոգուց բաղկացած, որի մէջ մտան՝ պ. պ. Կ. Շիրինեանց, Ար. Միանսարեան. Գր. Մարտիրոսեան, Արշ. Մխիթարեան, Յակ. Տէր-Յարութիւնեան, Ղազարեան. Յ. Արագեան, Աղաբաբեան։

Պետրոս Բեգզադեանց

## ԿՈՎԿԱՍԵԱՆ ԶԵՄՍՏՒՕ

Հոկտ. 14—25-ին Զխենկելիի նախագահութեամբ տեղի ունեցան խորհրդակցութիւններ Կովկասեան զեմստւոյի մասին։ Մասնակցում էին խորհուրդների, քաղաքային դումայի և կուսակցութիւնների ներկայացուցիչները։ Սոց. դեմ. Ղ. Տէր-Ղազարեանը զեկուցում կարդաց զեմստւոյի մասին՝ առաջարկելով ընդունել նահանգների սահմանների այն նախագիծը, որ մշակել է մասնաժողովը։ Զեկուցումից յետոյ Զխենկելին առաջարկեց ոբոշել՝ չի՞ կարելի արդեօք զեմստւօ մտցնել այն նահանգներում, ուր սահմանների փոփոխութեան հարց չկայ։ Այս առթիւ երկար ու բուռն վիճաբանութիւններ տեղի ունեցան։ Առաջարկուած բանաձեւերի շուրջ համաձայնութիւն կարելի չեղաւ կայացնել։ Ընդունուեց հետեւեալ բանաձեւը.

1) Ժամանակաւոր կառավարութեան դեկրետով ամբողջ Անդրկովկասի վրայ տարածել զեմստւային ընդհանուր օրէնսդրութիւնը։

2) Ժամանակաւոր կառավարութեան դեկրետով յանձնարարել Անդր. Առ. Կոմիտէին անյապաղ զեմստւօ մտցնել այն նահանգներում, շրջաններում և գաւառներում, ուր սահմանների վարչական փոփոխութեան հարց առաջ չէ գալիս։

Վիճելի սայոններ են որոշուած ամբողջ Երեւանի նահանգը, Գանձակի նահանգը՝ բացի Արէշի և Նուխու գաւառից, Կարսի և Կաղզուանի շրջանները, Բորչալուի և Ախալքալաքի գաւառները։

Վիճելի շրջաններում զեմստւօ մտցնելու նախապայմանն է սահմանների փոփոխութիւնը։ Սահմանները պէտք է փոփոխուեն դեկրետի հրատարակութիւնից յետոյ մի ամսուայ ընթացքում։

Այս կէտերին ի նպաստ ձայն տուին բոլոր վրացիներն ու թուրքերը առանց կուսակցական խտրութեան։ Հակառակ քուէ տուին բոլոր հայերը, նոյնպէս առանց կուսակցական խտրութեան։ Հակառակ քուէարկեցին նաև սոց-յեղափոխական շրջանային կոմիտէի և զինուորական կենտրոնական խորհրդի ներկայացուցիչները։

Երկրորդ բանաձեւը՝ առաջարկուած Ղ. Տէր-Ղազարեանի կողմից՝ պտնում էր անհրաժեշտ զեմստւօ մտցնել կոմիտէի կողմից առաջարկուած նախագծով սամանափոխում կատարելուց յետոյ և բոլոր վայրերում մի անգամից։ Այս բանաձեւին միացան և միւսները։ Նախագահը ձեւական առարկութիւններով մերժեց բանաձեւը դնել քուէարկութեան։ Դաշնակցութեան ներկայացուցիչները՝ յայտարարելով, որ անցած բանաձեւից յետոյ յետագայ աշխատանքները սահմանափոխութեան առթիւ չեն կարող բարեյաջող հետեւանք տալ՝ հեռացան ժողովից։

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

## ՀԱՅԿ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷ

Հոկտեմբերի 14-ին կայացաւ Հայկ. Կենտր. Կոմիտէի հերթական նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղան զեկուցումներ և արուեցին հետեւեալ որոշումները.

I. Պ. Նախագահը զեկուց, որ Ռոբինզոն կոմիտէից (Լոնդոն) իր անուամբ ստացուել է և մուծուել Կոմիտէիս կասսան հետեւեալ գումարները.

1) 5,900 ռ. Ալէքսանդրապոլի իր անուամբ պահուող «Սասունցիների» որբանոցի օգտին։

2) 4,425 ռ. Դիլիջանի արհեստանոցների օգտին։

3) 2,950 ռ. Արեւմտահայ Ուսուցչ. Միութեան օգտին. վերջին գումարը անմիջապէս փոխադրուած է Երեան Արեւմ. Ուսուցչ. Կենտր. Վարչութեան ի տնօրինութիւն։

Ժողովը որոշեց յայտնել բուռն շնորհակալութիւն օր. Ռոբինզոնի մարդասիրական վերաբերմունքի համար, ուղարկել լուսանկարը Ալէքսանդրապոլի իր անուամբ պահուող որբանոցին։

II. Պ. Արմէն-Սասունին, որը նոր էր վերադարձել Խնուսից, տուեց մի համառօտ զեկուցում այդ շրջանի գաղթականական գործերի մասին, ուր և որոշուեց Խնուսի որբանոցի որբերը տեղափոխել Կովկաս, իսկ այնտեղ պահել մի կայան-որբանոց։

III. Պ. Նախագահը զեկուց, որ Պետրոգրադի՝ պատերազմից վնասուածներին օգնող յանձնաժողովի տնօրինութեան տակ գտնուող Մեծ-Ղարաքիլիսի որբանոցը՝ յանձնաժողովը առաջարկում է վերցնել մեր հոգատարութեան տակ, ինչպէս և Թիֆլիսի հայ համայնքի երկու որբանոցները—ընդունել այդ որբանոցները ամբողջ կահ-կարասիքով։

IV. Պ. Նախագահը զեկուց, որ Վանից հասել են Ալէքսանդրապոլ 67 որբ, որոնցից 7-ը մահմեդականներ են, որոշուեց մահմեդականներին յանձնել Թիւրք բարեգ. ընկ., իսկ միւսներին տեղաւորել Ալէքսանդրապոլ։

V. Պ. Նախագահը յայտնեց, որ արդէն կազմակերպուել է

գաղթ. գլխաւոր խորհրդի գործադիր կոմիտէն, որի համար ընտրուել է նախագահ՝ պ. Ս. Յարութիւնեան, փոխ-նախագահներ՝ Հ. Առաքելեան, Վ. Փափազեան, անդամ-քարտուղար՝ պ. Ա. Դարբինեան։

Հոկտեմբերի 22-ին կայացաւ Հայկ. Կենտր. Կոմիտէի հերթական երկրորդ նիստը։

1. Գ. Ս. Յարութիւնեանը զեկուց Խնուսից՝ Կոմիտէիս լիազօրի հեռագիրը, որով խնդրում է փոխադրել Խնուս որբերի համար շորեր. որոշուեց անմիջապէս ուղարկել 50 որբի շորերի կոմպլեկտ. յանձնարարուեց նաև Խորհրդի անդամ տ. Հ. Ռոստոմբեանցին Վասպուրականի Կանանց Միութեան հետ պայմանաւորուելու և պատրաստել տալու 100 հոգու շորեղէն։

2. Կոմիտէիս որբանոցների ներքին կեանքին աւելի մօտիկից ծանօթանալու և անմիջական կարգադրութիւններ անելու համար՝ կազմուեց կոմիտէի անդամներից մի որբանոցային յանձնաժողով, որի մէջ մտան պ. պ. Յովհ. Տէր-Միրաքեան, Յ. Աէաղեան և կոմիտէիս ընդհանուր լիազօր Կ. Ղազաղեան։

Առաջարկուեց նաև կոմիտէի լիազօրին շաբաթը մի անգամ կոմիտէի գործունէութեան մասին համառօտ զեկուցումներ պատրաստել։

3. Կրծանիսում տեղաւորուած նախկին հայ համայնքի առաջին որբանոցը որոշուեց տեղափոխել Ջալալ-Օղլի։

4. Խորհրդի և Կոմիտէի նիստերը որոշուեց յետ այսու գումարել շաբաթ օրերը։

---

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

—պ. Կարապետ Շիրինեանից յօգուտ «Շիրինեան» գրադարանի 150 ռ.

—պ. Թովմաս Աւետիքեան Խանդուլեանից դպրոցական նպաստ 600 ռ.

—Իշխ. Բորիս Արղութեանից Սանահնի դպր. նպաստ 500 ռ.

—Լոզովայեա կայարանից պ. Կարապետ Մարտիրոսեանից յօգուտ գաղթականների 70 ռ.

—պ. Գարեգին Նորմանդովից յօգուտ որբերի 200 ռ.

—պ. Կարապետ Շիրինեանից յօգուտ «Շիրինեան» գրադարանի 250 ռ.

—պ. Գալուստ Տէր-Աղայեանից յօգուտ չքաւորների 10 ռ.

—պ. Արշակ Պետրովիչ Ոսկանեանից դպր. նպաստ 12,000 ռ.

—տիկին Սաթենիկ Կեօնջեանից ի յիշատակ իւր մօր՝ Եկատերինէ Սուլինեանի յօգուտ ճաշարանի 30 ռ.

—պ. Գասպար Իվանիչ Տէր-Մարգարեանից «Շովինանց» դպր. առ. կիսամեկի նպաստ 3000 ռ.

—Հաճի Պետրոս աղա Գաֆաֆեանից ի յիշատակ ամուսնոյ՝ հաջի Մարջանի 100 ռ.

—Նոյնից, յօգուտ տաճկահայ փախստականների 400 ռ.

—Արտաշէս, Վահրամ և Սարգիս Գաֆաֆեաններից ի յիշատակ իրենց մօր՝ հաջի Մարջանի 100 ռ.

—Նոյն Գաֆաֆեաններից յօգուտ տաճկահայ փախստականների 300 ռ.

—պ. Սամսոն Ստեփանիչ Յարութիւնեանից Վերին-Աղդան գիւղի դպրոցի նպաստ 250 ռ.

—Բժիշկ Լ.-ից Խոյ քաղաքից, յօգուտ Վանի փախստ. 25 ռ.

—«Մի բաժակ թէյ»-ի վարչութիւնից 3111 ռ. 34 կ.

—պ. Հայկ Սեսոյեանից ծանօթների մէջ ժողոված յօգուտ փախստականների 73 ռ.

—Մարիոպոլի հայ կոմիտէից յօգուտ փախստ. 200 ռ.

—Մ. Բ.-ից յօգուտ հայ գերիների 36 ռ.

—Тиф. Лист.-ի խմբագրութեան միջոցով Վերա Պետրովնա Սամսոնովայից յօգուտ ճաշարանի 100 ռ.

—պ. Միքայէլ Գրիգ. Ալիբէկեանից Քախուբէլի դպրոցին նպաստ 1500 ռ.։

Կ. Հ. Բ. Ընկ. մշտական անդամներ գրուելով վճարել են 100-ական ռուբլի հետևեալ անձնաւորութիւնները.—

1) Ստեփան Նիկիտիչ Տէր-Զաքարեան, 2) Սարգիս Յովհաննիսեան Բոյաճեան, 3) Խրիստաֆոր Մարութեան Մելիք-Մարութեան, 4) Զիբրայէլ Բուդաղեան, 5) Զաքարիա Յովսէփեան Մելիք-Ազարեան, 6) Կարապետ Գրիգորեան Աբեան, 7) տիկին Հեղինէ Բուղդանեան Առստամեան։

## ՃԻՒՂԵՐ

Կ. Հ. Բ. Ընկ. Գորուայ ճիւղը կազմակերպեց տուփերով միօրեայ ժողովարարութիւն, որից զուտ օգուտ մնաց 426 ռ.։ Վարչութիւնս շնորհակալութիւն է յայտնում այն անձանց, որոնք այս գործում աջակցեցին և օգնեցին նրան։

Նախագահ Վարչութեան՝ Ն. ա. ք. Տէր-Սահակեանց

—Կ. Հ. Բ. Ընկ. Դիլիջանի ճիւղի վարչութիւնը յայտնում է իր խորին շնորհակալութիւնը բժշկապետ Սամուէլ Պաւլովիչ Շահպարոնեանցին, որը նուիրել է Ընկերութեան տեղիս ճիւղին 25 ռ. և Արսէն Իվանիչ Տէր-Յովհաննիսեանցին, որը նուիրել է 100 ռուբլի։

—Քարվանսարայի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետևեալ նուէրները.— Մեծ. պ. Մարկ. Ես. Դոլուխանեանից 100 ռ. յօգուտ որբերի, Մեսրոպ քհ. Էգիլեանից 100 ռ. ի յիշատակ իւր ծնողների, պ. Գրիգոր Սիմէոնեանից 100 ռ. ի յիշատակ իւր եղբօր դստեր՝ Արուսեակի, տ. Ար. Պապեանից 5 ռ. մի որդեգրի վարձ. և պ. Լևոն Սարգսեանից 50 ռ. աղբիւրի ֆոնդի համար։

## ՆՈՒԷՐՆԵՐ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

«Համբաւաբեր»-ի խմբագրութիւնը շնորհակալութեամբ ստացաւ պ. պ. Կարապետ Շիրինեանից՝ 100 ռ., բժ. Յ. Մելիքեանից՝ 2 ռ., Կարապետ Մարտիրոսեանից՝ 20 ռ., Դիլիջանից Հերսիլիա Մինասնա Թումանեանից՝ 20 ռ., Աւետիս Տէր-Օհանեանից՝ 3 ռ.։

---

## ՍԱՀՄԱՆԱԴԻՐ ԺՈՂՈՎԻ ՇՈՒՐՋԸ

Սահմանադիր ժողովը, որ պիտի գումարուի նոյեմբերի 30-ին և որի ընտրութիւնները պիտի լինեն նոյեմբերի 22-ին, իր վրայ է կենտրոնացրել ամբողջ Ռուսաստանի ուշադրութիւնը։ Բոլոր կուսակցութիւնները արդէն ներկայացրել են իրենց ընտրական ցուցակները և պատրաստուել նախընտրական պայքարի։

Կովկասը պիտի մասնակցի Սահմ. Ժողովին՝ ընդամենը 32 պատգամաւորով, որից մօտ 8 ներկայացուցիչը հաւանաբար հայ լինի.

Հայ կուսակցութիւններից ցուցակ են ներկայացրել Հ. Ժ. կուսակցութիւնը և Հ. Յ. Դաշնակցութիւնը։

Հ. Ժ. Կուսակցութեան ընտրացուցակում նշանակուած են՝ Միք. Պապաջանեան, Ս. Յարութիւնեան, Ամիրեան և ուրիշներ։

Հ. Յ. Դաշնակցութեան ցուցակում կան Ռոստոմ, Վարանդեան, Օհանջանեան, Շահխաթունեան և ուրիշները։

Սոց. Դեմ. Կուսակցութեան ցուցակում նշանակուած են Ժորդանիա, Ծերեթելի, Չխէիձէ, Սկոբելև և այլն։ Էսէրների ցուցակում աչքի են ընկնում Ներուչևը, Լունկևիչը, Աթաբէգեանը և ուրիշներ։

Թիւրքերի ներկայացրած ցանկում աչքի են զարնում Ջաֆարովը, Թոփչիբաշևը, Սուլթանովը և այլն։

Կադէտների Անդրկովկասեան հատուածի ցուցակում կան Հոկոշկին, Աջեմեան և ուրիշներ։

Արդէն կուսակցութիւնները սկսել են լայն ագիտացիա և ամեն տեղ ոգևորութեամբ ու լարուած ուշադրութեամբ սպասում են ընտրութիւններին։

Սահմանադիր Ժողովը մեծ կարևորութիւն ունի Ռուսաստանի ապագայի համար։ Եթէ նոյն իսկ նա ցանկալի արդիւնք չտուեց, բայց և այնպէս Ռուսաստանի պատմութեան մէջ կը մնայ որպէս մի նշանաւոր պետական ձեռնարկ։

# Գեղարուեստ

## ԿԱՐՕՏ

Որպէս գոհար ցօղն է ծորում ճերմակ ամպեր,
Որպէս հեռու ծովից հովի սոյլը անբիծ,
Որպէս կապոյտ ծաղիկների բոյրը կնդրուկ,
Վերջալոյսի խաղող հալւող շողը դալուկ..,

Որպէս թափիշ տերևների սօսափն անուշ,
Ու թևաբեկ հէգ թիթեռի ցնցումն անյոյս,
Հրաժեշտի համբոյրների մի սուրբ հնչիւն,
Գիշերի մէջ սիրոյ խօսքերը դողդոջուն.—

Ի՛մ սրբուհի, այդ ամենի պէս մեղմագին—
Մանդոլինիդ նուագներն եմ յիշում կրկին.
Լոյս անունդ է իմ շուրթերին լուռ մնում,
Աշունի պէս աչերս են միշտ արցունք ցօղում։

Անուրջ

15 օգոստ., Արասթուման

# № 7

## Ցուցակ Հայ Ժողովրդական Կուսակ.

## ՀԻՄՆԱԴԻՐ ԺՈՂՈՎԻ ՀԱՄԱՐ

1) Պապաջանեան, Միքայէլ Յովհաննէսեան, անդամ 4-րդ Պետական Դումայի, անդամ Անդրկովկասեան Յատուկ Կոմիտէի, նախագահ Հայ Ժող. Կուսակցութեան կենտրոնական կոմիտէի։ Թիֆլիս, պալատ։

2) Յարութիւնեան, Սամսոն Ստեփանեան, երդ. հաւատ. Թիֆլիսի քաղաքային դումայի իրաւասու, նախագահ Կ. Հ. Բարեգ. Ընկ., նախագահ Հայոց Կենտրոնական Կոմիտէի, Թիֆլիս, Գրիբօեդովսկայա, 23։

3) Տէր-Պետրոսեան, Գեղամ Մարգարեան, անդամ առաջին Պետական դումայի։ Թիֆլիս, Գանովսկայա, 24։

4) Ամիրեան, Իսահակ Թովմասեան, երդ. հաւատ., պրապորշչիկ. փոխ-նախագահ Հայ Ժող. կուսակցութեան կենտ. կոմիտէի, Թիֆլիս, Սերգէեվսկայա 14։

5) Վաչեանց, Աստուածատուր Գէորգեան, լեռնային ինժեներ, Բագուի քաղ. դումայի իրաւասու, նախագահ հոգաբարձութեան Բագւի հայոց դպրոցների։ Բագու, Տելեֆոննայա, տ. Սրաֆեւովի։

6) Ալթաբէգեան, Միքայէլ Ներսէսեան, երդ. հաւատ., Թիֆլիսի քաղ. դումայի իրաւասու։ Թիֆլիս, Պասկեւիչի փողոց, 6.

7) Այվազեան, Յարութիւն Գաբրիէլեան, բժիշկ. անդամ առաջին պետական դումայի։ Թիֆլիս, Բարոնսկայա, 9։

8) Սպէնդիարեան, Յովհաննէս Սիմոնեան, երդ. հաւատարմատար։ Թիֆլիս, Եւանգուլովսկայա, 3։

9) Ստեփանեան, Կարապետ Մկրտչեան, բժիշկ. Թիֆլիս, Նոր Բէհբութեան փող. տ. Թումանովի։

10) Զաքարեան, Թադէոս Յարութիւնեան, բժշկապետ, նախագահ Բագուի Հայոց Կուլ. Միութեան։

11) Բունիաթեան, Մենտոր Աբրահամեան, մագիստրոս քաղաքական տնտեսութեան և վիճակագրութեան։ Թիֆլիս Երևանեան հրապարակ, տ. Վաճառականական բանկի։

22) Խոջայեան, Իսա՛ակ Մկրտչեան, երդ. հաւատարմատար Գանձակի քաղ. դումայի իրաւասու, Գանձակ, եկեղեցու փող, 2։

13) Մելիքեան, Յովհաննէս Նահապետեան, Երևանի քաղ. դումայի իրաւասու։ Երևան, Աստաֆեան փողոց, 30։

14) Մելիք Շահնազարեան, Կարապետ Իսահակեան, Շուշու քաղաքագլուխ։ Շուշի։

Կիրակի, հոկտ. 22-ին, Սամսոն Յարութիւնեան դասախօսեց Հիմնադիր Ժողովի ընտրութիւնների եղանակի և Ժողովի նշանակութեան մասին։ Ընտրութիւնները պէտք է կատարուեն հինգ անդամանի սկզբունքով. այսինքն պէտք է լինեն ընդհանուր, հաւասար, ուղղակի, գաղտնի և համեմատական։ Սա ամենալայն դեմոկրատական սկզբունքն է, որի համար տարիներով ու դարերով պայքար են մղել Եւրոպայի ժողովուրդները և որ սակայն

ոչ մի տեղ լիովին չէ գործադրւում։ Յեղափոխական Ռուսաստանը մի անգամից վճռեց այս հարցը։ Բացատրելով իւրաքանչիւր յատկանիշի էութիւնը՝ դատախօսը աւելի մանրամասն կանգ առաւ «ընդհանուր» յատկանիշի վրայ։ Ընդհանուր ձայնատւութիւն նշանակում է, որ ընտրելու և ընտրուելու իրաւունք ունեն առհասարակ բոլոր ռուսահպատակ անձերը, որոնք լրացրել են 20 տարին, առանց սեռի, դասակարգի, ցեղի, դաւանութեան խտրութեան։ Բացառութիւն է արուած միայն խելագարների, խուլ և համրերի և քրէական յանցանքների պատճառով դատապարտուածների համար։ Ուրիշ ժամանակներում և ուրիշ տեղերում այսպիսի լայն իրաւունք չէ ունեցել և չունի ժողովուրդը, այլ գոյութիւն են ունեցել և ունեն աւելի կամ պակաս սահմանափակումներ։ Կան, օրինակ, դասակարգային սահմանափակումներ, որի զօրութեամբ ընտրողական իրաւունք ստանալու համար պէտք է ունենալ անշարժ կալուած, կամ որոշ քանակութեամբ տուրք վճարել պետութեան, կամ գրագէտ լինել և այլն։ Կայ սեռի սահմանափակում, որի զօրութեամբ կանայք զրկուած են ընտրութիւններին մասնակցելու իրաւունքից։ Կանայք իրանց քաղաքացիական իրաւունքների համար, որոնց մէջ է մտնում և ընտրողական իրաւունքը, վաղուց պայքար են մղում (սուֆրաժիստուհիներ) և հետզհետէ նուաճումներ անում։ Աւստրալիայում նրանք արդէն ստացել են ընտրելու և ընտրուելու իրաւունք և նրանց ազդեցութիւնը աւստրալիական պարլամենտում այնքան օգտակար է եղել ոչ միայն կրթական, այլ և ընդհանուր քաղաքական գործերում, որ պարլամենտը հարկ է համարել կոչ ուղղել ուրիշ պարլամենտների, որ կանանց ընտրողական իրաւունք տան։ Բոլոր սահմանափակումների մէջ դատախօսն, անձամբ, ընդունելի է համարում միայն զինուորների ընտրողական իրաւունքի սահմանափակումը, քանի որ նրանք զինուորական ծառայութեան մէջ են գտնւում, որովհետև կարծում է, որ զինուորների վրայ ընտրողական իրաւունքը տարածելը կարող է պատճառ դառնալ դիսցիպլինայի խախտման։

Հինգանդամանի ընտրութիւնները ահագին աշխատանք և մեծ դրամական ծախսեր են պահանջում, Ընտրութիւնները ղեկավարելու համար ընտրուած է կենտրոնական կոմիսիա Պետրոգրադում և շրջանային, նահանգական, գաւառական և աւելի մանր կոմիսիաներ՝ ամբողջ Ռուսաստանում։ Այս աշխատանքներն ու ծախսերը սակայն արդարանում են այն մեծ նշանակութեամբ, որ ունենալու է Հիմնադիր Ժողովը։ Ամեն միջոց ձեռք է առնում ժամանակաւոր Կառավարութիւնը, որպէսզի Հիմնադիր Ժողովը լինի արդարև արտայայտիչ ժողովրդի կամքի, որովհետև ժողովուրդն է, որ իր ընտրեալների, Հիմնադիր Ժողովի միջոցով պէտք է տնօրինէ իր ապագայ վիճակը։ Հիմնադիր Ժողովը պէտք է լուծէ պետական կազմի և կեանքի վերաբերեալ ամենակարևոր հարցերը, որոնք մեզ համար ևս կենսական նշանակութիւն ունեն։ Ժամանակաւոր Կառավարութիւնը յայտարարել է Ռուսաստանը հանրապետութիւն։ Սակայն սա վերջնական չէ։ Հիմնադիր Ժողովը, նայելով թէ ինչ կազմ կունենայ, կարող է Ռուսաստանը դարձնել միապետութիւն յայտարարել, որից տուժողը ամենից շատ մենք կը լինենք։ Ուրեմն մենք պէտք է անգործ և անփոյթ չը մնանք, ոչ մի ձայն չը կորցնենք. պէտք է ընտրենք պատգամաւորներ, որոնք հանրապետական կարգի կողմնակից և պաշտպան լինեն։ Հիմնադիր Ժողովը պէտք է լուծէ և հողային հարցը, բանուորական հարցը, այս լուծումներից կախում ունի բազմամիլիոն գիւղացութեան և ուժեղ կազմակերպուած աշխատաւոր դասակարգի բաղդը—այդ հարցերի բաւարար լուծումից կախուած է այն բանը, թէ արդեօք Ռուսաստանը բարեկարգ ու ծաղկած երկիր պիտի դառնայ թէ՞ դժոխք։ Պէտք են ուրեմն բանիբուն, երկրի ու դասակարգերի կարիքներին լաւ ծանօթ պատգամաւորներ, որ կարողանան բաւարար կերպով վճռել այս սուր հարցերը։ Հիմնադիր Ժողովը պէտք է լուծում տայ ազգային հարցին։ Շատերը թէև գրում են թէ կողմնակից են ազգերի ինքնորոշման իրաւունքին, բայց իրօք հակառակ են դրան։ Անդրկովկասեան երեք գլխաւոր ազգերը, որոնք ունեն իրենց տերիտորիան, պէտք է իրաւունք ունենան ինքնորոշման։ Մենք պէտք է համոզուած և ուժեղ ներկայացուցիչներ ունենանք Հիմնադիր Ժողովում, որպէս զի պաշտպանեն մեր ազգային իրաւունքները։ (Ծափահար.)։

# Քրոնիկոն

Օզակոմի վերակազմութեան խնդրի առթիւ, ամսիս 20 ին կայացած խորհուրդների երկրային կենտրոնի նիստում հարց է յարուցուել Պետրոգրադից գեներալ կոմիսար նշանակելու մասին։ Ժողովը այդ հարցի մասին միաձայն որոշեց. «Գեներալ կոմիսարը Անդրկովկասի համար ոչ մի դէպքում ընդունելի չէ։ Երկրի կառավարութիւնը ներկայ պայմաններում կարող է լինել միայն հաւաքականով։ Օզակոմի վերակազմութեան խնդրում ընդունուեց ազգային ներկայացուցչութեան սկզբունքը։ Ազգային ներկայացուցիչները նշանակուելու են ազգային կազմակերպութիւնների կողմից և ստանալու են կենտրոնի հաւանութիւնը։ Օզակոմի անդամներից մէկը նշանակուած պիտի լինի Պետրոգրադից, նա պէտք է լինի կամ էս-դեկ կամ էս-էր։ Օզակոմի մէջ, բացի ազգային ներկայացուցիչներից, մտնելու են երեք էս-դեկ և երկու էս-էր։ Այս առաջարկն ընդունուեց [illegible]6 ձայնով ընդդէմ 26ի։ Օզակոմի խորհրդի հարցը հանուեց հերթից։ Յետաձգուեց և հասարակութեան ապահովութեան կոմիտէի խնդիրը։

—Կիսլավօդսկում աստրախանցի մի տիկին իր սեփական տունը, որ արժէ 200,000 ռ., նուիրել է Հայ Գրողների Ընկերութեան։

—«Հայկազեան» ընկ.ը որ հիմնուեց այս տարուայ ամրան սկզբին, շուտով սկսելու է իր գործունէութիւնը։ Այս ամառ Կիսլավօդսկում ընկ.եանը անդամագրուել են 30 հոգի վճարելով 5000 ռ., իբրև մշտական անդամավճար։ Իսկ Ագուլիսեցի վաճառական Խ. Ասլանեան ընկերութեան տրամադրութեան տակ է դրել մի քանի տասնեակ հազար ռուբլի իր մայրենի Ագուլիսի բարբառը հաւաքելու, ուսումնասիրելու և հրատարակելու համար։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1